Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 13 ՀՈՒԼԻՍ 1957

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

Նյութեր զրույցների համար



---


Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս՝ 2—52—78:*






# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԺՈՂՏՆՏԽՈՐՀՈՒՐԴԸ


ՅԱ. ԶԱՐՈԲՅԱՆ
ՀԿՊ Կենտկոմի քարտուղար


Վլադիմիր Իլյիչ Լենինը դեռևս սովետական իշխանության արշալույսին, այն բանից հետո, երբ քաղաքացիական պատերազմը հաղթականորեն ավարտվեց և իմպերիալիստների զինված հարձակումը ետ մղվեց, առաջնակարգ նշանակություն էր տալիս տնտեսական շինարարության հարցերին: «Պայքարը այս բնագավառում է փոխադրվել համաշխարհային մասշտաբով,— ասել է Լենինը:— Եթե մենք լուծենք այս խնդիրը— անպայման ու վերջնականապես կշահենք միջազգային մասշտաբով: Ուստի տնտեսական շինարարության հարցերը մեզ մոտ միանգամայն բացառիկ նշանակություն են ստանում»:

Ղեկավարվելով մեծ Լենինի իմաստուն ցուցումներով, Կոմունիստական պարտիան

և Սովետական կառավարությունը տնտեսական շինարարության և ժողովրդական տնտեսության կառավարումը կատարելագործելու հարցերը միշտ պահել են իրենց ուշադրության կենտրոնում։

Արդյունաբերական արտադրությունը և շինարարությունը մեր երկրում հասել են վիթխարի մասշտաբների և աճում են տարեցտարի։ 1957 թվականին Սովետական Միության արդյունաբերական արտադրանքի ծավալը նախառևոլյուցիոն ժամանակաշրջանի համեմատությամբ ավելացել է ավելի քան 30 անգամ, իսկ նախապատերազմյան ժամանակի համեմատությամբ՝ մոտ չորս անգամ։

Արտադրության այժմյան մասշտաբների տեսակետից հատուկ նշանակություն են ստանում արդյունաբերության, շինարարության և ամբողջ ժողովրդական տնտեսության կառավարման կազմակերպման ձևերը կատարելագործելու հարցերը։ Միանգամայն ակնհայտ է, որ մի կենտրոնից շատ դժվար է ապահովել երկրի ընդարձակ տարածություններում ցրված, մեծ մասամբ Մոսկվայից հեռու գտնվող տասնյակ հազարավոր պետական ձեռնարկությունների և



կառույցների օպերատիվ ու կոնկրետ ղեկավարությունը։

Դրանով է բացատրվում այն փաստը, որ վերջին ժամանակներս Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի դեկտեմբերյան, փետրվարյան պլենումներում և ապա Սովետական Միության Գերագույն Սովետի յոթերորդ սեսիայում հանգամանորեն քննարկվեցին ու մշակվեցին տնտեսության կառավարումը կատարելագործելու միջոցառումները։

Աննպատակահարմար գտնվեց արդյունաբերության և շինարարության տեխնիկական ու արտադրական ղեկավարության հետագա մասնագիտացման ուղիով ընթանալը, կենտրոնում նորանոր մասնաճյուղային մինիստրություններ ու գերատեսչություններ ստեղծելը։ Այսպիսի պայմաններում էլ ավելի մեծ քանակությամբ մասնագետներ կկտրվեին նյութական արժեքների անմիջական արտադրության ոլորտից և կզբաղվեին վարչական բազմաթիվ ապարատներում, ինչպես նաև կաճեին գերատեսչական պատնեշները, որոնք կարգելակեին աշխատանքը։

Սովետական Միության Գերագույն Սովե-

տի 7-րդ սեսիան հավանություն տվեց արդյունաբերության և շինարարության կառավարման մասնաճյուղային սկզբունքից տնտեսական վարչական շրջանի բազայի վրա տերիտորիալ սկզբունքին անցնելու վերաբերյալ միջոցառումներին։ Տնտեսության կառավարումը տնտեսական շրջանում կենտրոնացնելը՝ ղեկավարությունը կմոտեցնի արտադրությանը, կվերացնի գերատեսչական շատ պատնեշներ, հնարավորություն կտա ավելի արագ և կոնկրետ լուծելու հարցերը, լրիվ օգտագործելու արտադրական ռեզերվներն ու տեղական հումքի պաշարները, վարչական ապարատներից մեծ քանակությամբ մասնագետներ կուղարկի՝ ձեռնարկություններում ստեղծագործական աշխատանք կատարելու համար և կնպաստի աշխատանքի արտադրողականության է՛լ ավելի բարձրացմանն ու արդյունաբերական արտադրանքի և շինարարական աշխատանքների որակի բարելավմանը։

Բերենք մեր ռեսպուբլիկայից մի քանի բնորոշ օրինակներ, որոնք ցույց են տալիս, թե ինչպես գերատեսչական մոտեցումը ձգձգում է կարևոր հարցերի լուծումը և խոչընդոտ հանդիսանում արտադրական ռե-



զերվների ավելի արդյունավետ օգտագործմանը։

Ալավերդու պղնձաձուլական գործարանի տերիտորիայում էին գտնվում քիմիական գործարանի այն ցեխերը, որոնք պղնձաձուլական արտադրության մնացորդ գազերից ծծմբաթթու են մշակում։

Նկատի ունենալով այդ ձեռնարկությունների արտադրական սերտ կապն ու փոխադարձ կախումը, դեռևս շատ տարիներ առաջ նախատեսվում էր ստեղծել պղնձաքիմիական կոմբինատ։ Սակայն ՍՍՌՄ Գունավոր մետալուրգիայի մինիստրության Գլավմեդը, գերատեսչականության հանդես բերելով, հրաժարվում էր ընդունել քիմիական ցեխերը, իսկ ՍՍՌՄ քիմիական արդյունաբերության մինիստրության Գլավխիմպրոմը հրաժարվում էր դրանք հանձնել պղնձաձուլական գործարանին։ Արդյունքը եղել էր այն, որ մեկ գործարանի տերիտորիայում ստեղծվել էր երկրորդ գործարանը։ Երկու գործարաններն էլ զուգահեռաբար ստեղծել էին մեխանիկական և էլեկտրացեխեր, գարաժներ, պոմպային կայաններ, որոնք մի քանի տասնյակ մետրի վրա էին գտնվում միմյանցից և ունեին իրենց վարչա-կառավարչական ապարատները։ Այս առնչությամբ

երկու գործարանների վերադիր ծախսերը կազմում էին տարեկան մոտ 13 միլիոն ռուբլի։

Դեռ ավելին. տարիներ շարունակ գերատեսչական վեճեր էին լինում հումքն օգտագործելու և հատկապես Ալավերդի քաղաքի գազածածկումը վերացնելու հարցերի մասին։ Ինչ խոսք, որ այդ հարցերը այժմ պետականորեն կլուծվեն և այլևս չի լինի պղընձի, ինչպես նաև արտադրության արժեքավոր ավելցուկների կորուստներ։

Կամ մի այլ օրինակ. Արարատի կրաքարի հանքերում կողք-կողքի կազմակերպվել և գործում էին կրաքարային երեք տնտեսություններ, այն է՝ ՍՍՌՄ քիմիական արդյունաբերության մինիստրության Կիրովի անվան գործարանի, ՍՍՌՄ Շինանյութերի արդյունաբերության մինիստրության ցեմենտի գործարանի և Հայկական ՍՍՌ Շինանյութերի արդյունաբերության մինիստրության կրաքարի գործարանի տնտեսությունները։ Այդ գերատեսչություններից յուրաքանչյուրը, փորձելով ինքնուրույն կերպով ապահովել սեփական կրաքարի պահանջը, յուրովի էր լուծում այն հարցերը, որոնք պետք է լուծվեին համատեղ, սակայն նրանցից յուրա-



քանչյուրը, ինչպես Կռիլովի առակն է ասում՝ սայլն իր կողմն էր քաշում։ Եվ հետեվանքը լինում էր պետական միջոցների ավելորդ ծախսումները, երկարատև վեճերն ու կրաքարի պակասությունը։

Բոլոր մեխանիզմները մի հանքային տնտեսության մեջ կենտրոնացնելու դեպքում կարելի էր այդ երեք գերատեսչություններն էլ լրիվին ապահովել կրաքարով և զգալի չափով իջեցնել նրա ինքնարժեքը։ Սակայն գոյություն ունեցող գերատեսչականությունը շարունակ խոչընդոտ էր հանդիսանում դրան։

Երկար ժամանակ չէր լուծվում նաև այնպիսի մի կարևոր հարց, ինչպիսին Ախտայի շրջանի նեֆելինային սիենիտների բնական բազմահարուստ պաշարները տնտեսապես արդյունավետ օգտագործելու հարցն էր, պաշարներ, որոնցից, բացի ալյումինի օքսիդից, կարելի է մեծ քանակությամբ բարձրորակ ցեմենտ, կաուստիկ սոդա և այլ արժեքավոր քիմիական նյութեր ստանալ։

Կարելի է բերել և շատ ուրիշ օրինակներ, բայց սա էլ բավական է, որպեսզի մի անգամ ևս ցույց տանք, թե որքան ժամանակին և իմաստուն միջոցառումներ են անցկացնում պարտիան ու կառավարությունը

արդյունաբերության ու շինարարության կառավարման մասնաճյուղային սկզբունքից տնտեսական շրջանի բազայի վրա տերիտորիալ սկզբունքին անցնելու ուղղությամբ։

Այժմ մի քանի խոսք այն մասին թե ինչպե՞ս է իրականացվում արդյունաբերության և շինարարության կառավարման վերակառուցումը մեր ռեսպուբլիկայում։

Ընկեր Խրուշչովի զեկուցման թեզիսների լայն քննարկման հիման վրա, որին մասնակցեցին մեր ռեսպուբլիկայի մոտ 300 հազար աշխատավորներ և Սովետական Միության Գերագույն Սովետի յոթերորդ սեսիայի ընդունած օրենքի հիման վրա մշակվեց արդյունաբերության և շինարարության կառավարման սկզբունքային սխեմային նախագիծ, իսկ այնուհետև Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի կողմից ընդունվեց օրենք՝ արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումն է՛լ ավելի կատարելագործելու մասին։

Մինչ այդ, մեր ռեսպուբլիկայի աշխատավորները, միահամուռ կերպով հավանություն տալով ժողովրդական տնտեսության կառավարումը վերակառուցելու մասին պարտիայի և կառավարության միջոցառումներին, միաժամանակ այդ կապակցու-



թյամբ շատ արժեքավոր և գործնական առաջարկություններ էին արել։

Արդյունաբերության և շինարարության կառավարման համար Հայկական ՍՍՌ-ում կազմված է մեկ տնտեսական վարչական շրջան։ Ինչպես հայտնի է, դեռ վերջերս Հայկական ՍՍՌ տերիտորիայում գտնվող արդյունաբերական ձեռնարկություններին ու շինարարական կազմակերպություններին ղեկավարում էին 36 միութենական, միութենական-ռեսպուբլիկական և ռեսպուբլիկական մինիստրություններ ու գերատեսչություններ։

Արդեն վերացված է արդյունաբերական վեց մինիստրություն և ստեղծվել է Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության խորհուրդ (Ժողտնտխորհ), որը պետք է ապահովի արդյունաբերության տնտեսական, արտադրական և տեխնիկական ղեկավարությունը։

Ժողտնտխորհը միավորել է ավելի քան 300 արդյունաբերական ձեռնարկություն։ Այդ ձեռնարկությունները երկրին կտան հինգ միլիարդ 363 միլիոն ռուբլու համախառն արտադրանք։

Արդյունաբերական ձեռնարկությունների

մի մասը, այդ թվում հացի գործարանները, հանձնվում են աշխատավորների դեպուտատների քաղաքային և շրջանային Սովետների գործկոմներին։ Դա զգալիորեն կբարձրացնի տեղական Սովետների դերն ու պատասխանատվությունը բնակչության սպասարկումը բարելավելու գործում։

Ժողտնտխորհը կազմված է ութը ֆունկցիոնալ բաժիններից, ունի նյութական-տեխնիկական մատակարարման և վաճառահանման վարչություն, ինչպես նաև տրանսպորտային վարչություն։ Հաշվի առնելով ռեսպուբլիկայի արդյունաբերության բազմաճյուղ բնույթը, Ժողտնտխորհին կից ստեղծվել է 10 մասնաճյուղային արտադրական վարչություն։

Ժողտնտխորհի, ինչպես և տեղական պարտիական ու սովետական օրգանների վրա հատուկ պատասխանատվություն է դնում այն փաստը, որ ծանր արդյունաբերության հինգ ճյուղերում՝ էներգետիկայի, գունավոր մետալուրգիայի և լեռնա-հանքային արդյունաբերության, քիմիական, էլեկտրատեխնիկական, և գործիքաշինական, հաստոցաշինական և մեքենաշինական ճյուղերում արտադրական և տեխնիկական ղեկա-



վարությունը իրականացվում է անմիջականորեն ռեսպուբլիկայում։ Ռեսպուբլիկայի շինարարական կազմակերպությունները Ժողտնտխորհի մեջ չեն մտնում։

Մեր ռեսպուբլիկայում շինարարության կառավարման համար Քաղաքային և գյուղական շինարարության մինիստրության, ինչպես նաև 10 շինտրեստների և շինմոնտաժային կառավարչությունների բազայի վրա ստեղծվել է Հայկական ՍՍՌ Շինարարության ռեսպուբլիկական մինիստրություն, որը 1957 թվականին կատարելու է 550 միլիոն ռուբլու արդյունաբերական և բնակարանային, կենցաղային և այլ շինարարական աշխատանք։

Հետագա տեխնիկական պրոգրեսն ապահովելու, արդյունաբերության և շինարարության մեջ նոր տեխնիկան արմատավորելու համար Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից ստեղծված է Պետական գիտատեխնիկական կոմիտե։

Տնտեսական շրջանի բազայի վրա արդյունաբերության ու շինարարության կառավարումը վերակառուցելու առնչությամբ վերակառուցվում է նաև ռեսպուբլիկայի Պետպլանի, Պետական Վերահսկողության և

Ցինանսների մինիստրությունների, տեղական, սովետական, ինչպես նաև պրոֆմիութենական օրգանների աշխատանքը, որոնց դերը տնտեսական շրջանի պայմաններում անչափ մեծանում է։

Ինչպես տեսնում ենք, տնտեսության կառավարման նոր ձևերին անցնելու կապակցությամբ մեծ և բարդ կազմակերպական աշխատանք է կատարվելու։

Այժմ, երբ մեր երկիրը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ գործնականում սկսել է կենսագործել ժողովրդական տնտեսությունը ղեկավարելու կատարելագործված միջոցառումները, անչափորեն բարձրացել է պարտիական կազմակերպությունների դերը, ինչպես տնտեսության ղեկավարման գործում, այնպես էլ ագիտացիոն աշխատանքի բնագավառում։ Անհրաժեշտ է ամենուրեք ծավալուն բացատրական աշխատանք կատարել արդյունաբերության և շինարարության կառավարման վերակառուցման վիթխարի նշանակության մասին, այն մասին, որ մեր պարտիան բացի ժողովրդի շահերից չունի ուրիշ շահեր։ Նրա նպատակը եղել և մնում է՝ անդադրում ամրապնդել մեր երկրի հզորությունը և բարձրացնել աշխատավորների նյութական բա-



րեկեցության մակարդակը։ Այդ կապակցությամբ խիստ անհրաժեշտ է, որ մեր ագիտատորները գործարաններում ու ֆաբրիկաներում, կոլտնտեսություններում և սովխոզներում, մեքենա-տրակտորային կայաններում և ամեն տեղ, ուր կան ունկնդիրներ, մասսայականացնեն ու պրոպագանդեն արդյունաբերության և շինարարության կառավարման կազմակերպումն է՛լ ավելի կատարելագործելու մասին ՍՍՌՄ և Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետների որոշումները, օգտագործեն մասսայական-քաղաքական աշխատանքի բոլոր ձևերն ու միջոցները՝ դրանք աշխատավորների սեփականությունը դարձնելու համար։

Ագիտացիոն աշխատանքն ինքնանպատակ չէ, ագիտացիոն-բացատրական աշխատանքը պետք է զուգակցել կազմակերպական աշխատանքի հետ, ագիտացիայի միջոցով փնտրել, գտնել նոր ուղիներ արտադրանքի թողարկումն ավելացնելու համար։ Մասսայական-բացատրական աշխատանքի միջոցով բարելավել ձեռնարկությունների տնտեսական գործունեությունը։

Մեր ռեսպուբլիկայի ժողտնտխորհուրդը, որը համալրված է լավագույն կադրերով,

արդյունաբերության մեջ կուտակված մասնագետներով, արդեն անցել է աշխատանքի։

Թեպետ կարճ ժամանակ է, ինչ սկսել է աշխատել ժողտնտխորհը, բայց առօրյա գործնական աշխատանքում դրսևորվում են ռեսպուբլիկայի արդյունաբերությունը նոր ձևով ղեկավարելու առավելությունները, երբ հարցերը լուծվում են արագ ու արդյունավետ և աշխատանքը դարձել է ավելի ճկուն ու նպատակասլաց։

Ռեսպուբլիկայի, ինչպես նաև մեր սոցիալիստական Հայրենիքի բոլոր աշխատավորները աշխատանքային ու քաղաքական մեծ ոգևորությամբ են պատրաստվում դիմավորելու Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակը։

Գլխավորելով մասսաների աճած քաղաքական և ստեղծագործական ակտիվությունը, է՛լ ավելի լայնորեն ծավալենք ստեղծագործական մրցությունը և ապահովենք 1957 թվականի՝ վեցերորդ հնգամյակի երկրորդ տարվա պետական պլանի ժամկետից շուտ կատարումը, Մեծ Հոկտեմբերի 40-ամյակը դիմավորենք աշխատանքային նոր հաղթանակներով։

---

## ԶՐՈՒՅՑ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱԶԳԵՐԻ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

### Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Մեր մեծ երկրում լենինյան ազգային քաղաքականության հետևողական կիրառման շնորհիվ բոլոր ազգերն ու ժողովուրդները տնտեսական ու կուլտուրական շինարարության ասպարեզում ձեռք են բերել չտեսնված հաջողություններ։ Սոցիալիզմի համար մղվող պայքարում և նրա հաղթանակի հիման վրա ստեղծվել է ժողովուրդների մեծ բարեկամությունը, աճել ու ամրապնդվել է բազմազգ հզոր սոցիալիստական պետությունը՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը, սոցիալիստական ազգերի մեծ համագործակցությունը։

Այն, թե ինչպես էր դրսևորվում Ռուսաստանի Ֆեդերացիայի և Հայաստանի եղբայրական համագործակցությունը, բնորոշ է հետևյալ պատմական էպիզոդը։ Հայաստանում սովետական իշխանություն հաստատ-

վելուց հետո շուտով Իվանովոյի մարզի Վիչուգա քաղաքի տեքստիլագործները մեծ Լենինի ցուցումով Հայաստան են ուղարկում հաստոցներ ու մեքենաներ՝ տեքստիլ արդյունաբերության համար։ Ուղարկելով այդ սարքավորումը, Վիչուգայի տեքստիլագործները Լենինականի բանվորներին գրել են. «Թանկագին ընկերներ։ Ընդունեցեք մեր այս համեստ նվերը և միահամուռ կերպով պայքարեցեք ձեր տեսքտիլ արդյունաբերության զարգացման համար»։

Վիչուգայի աշխատավորների եղբայրական նվերը առաջին ավանդն էր ռեսպուբլիկայում տեքստիլ արդյունաբերություն ստեղծելու գործում։ Այդ բազայի վրա տարեցտարի աճեց Լենինականի տեքստիլ կոմբինատը, որը ներկայումս հագեցված է հայրենական առաջնակարգ տեխնիկայով և Հայրենիքին տալիս է միլիոնավոր մետր բարձրորակ գործվածքներ։

Օրըստօրէ ավելի ու ավելի էին ամրապընդվում սոցիալիստական ազգերի փոխադարձ կապերն ու օգնությունը տնտեսական և կուլտուրական շինարարության բնագավառում։ Լայն ու բազմազան են ժողովուրդների այդ կապերի, համագործակցության և բարեկամության ձևերը։ Դրանք արտահայտվում



են փոխադարձաբար միմյանց արդյունաբերական սարքավորում և շինանյութեր, արդյունաբերական և պարենային ապրանքներ մատակարարելու, սոցիալիստական մրցության մեջ մտնելու, գիտա-տեխնիկական կադրեր պատրաստելու և գիտական ու կուլտուրական փոխադարձ կապեր հաստատելու մեջ։

Սովետական Միության ժողովուրդների եղբայրական բարեկամությունը առանձնապես ակնառու կերպով երևան է գալիս խոշորագույն հիդրոտեխնիկական կառուցվածքների շինարարության ժամանակ, որովհետև դրանք կառուցում է ամբողջ երկիրը, կառուցում են բոլոր եղբայրական ռեսպուբլիկաները, երկրամասերն ու մարզերը։ Կախովկայի հիդրոէլեկտրակայանի շինարարության համար շինանյութեր, մեխանիզմներ, սարքավորում ուղարկեցին բոլոր 15 եղբայրական ռեսպուբլիկաների 300 քաղաքների արդյունաբերական ձեռնարկություններ, 26 ազգությունների ներկայացուցիչներ անմիջականորեն աշխատում էին շինարարության վրա։ Ջանազան ռեսպուբլիկաների 350 քաղաքների մոտ հազար սովետական արդյունաբերական ձեռնարկություններ անհրաժեշտ նյութեր, մեխանիզմներ և սարքավորում էին

մատակարարում Վոլգա-Դոն ջրանցքի շինարարությանը։

Հայտնի է, որ մեր ռեսպուբլիկայում մեծ աշխատանք է տարվում Հրազդան գետի վրա հիդրոէլեկտրակայանների մի ամբողջ սիստեմ կառուցելու ուղղությամբ։ Այստեղ, հայերի հետ մեկտեղ անձնվիրաբար աշխատում են ռուսներ և ուկրաինացիներ, բելոռուսներ և ադրբեջանցիներ։ Սևան-Հրազդան կասկադի հիդրոէլեկտրակայանների կառուցմանը մասնակցում են երկրի բազմաթիվ արդյունաբերական ձեռնարկություններ։ Ուրալի և Դոնբասի աշխատավորները շինարարության համար ուղարկում են մետաղ, լենինգրադցիները և կրամատորցիները պատրաստում են տուրբիններ, Մոսկվայի, Գորկու, Մինսկի և բազմաթիվ այլ քաղաքների արդյունաբերական ձեռնարկությունները ուղարկում են շինանյութեր, ավտոմեքենաներ, զանազան մեխանիզմներ, սարքավորում, արմատուրա։

Եվ այնտեղ, ուր շինարարության համար կպահանջվեին տասնամյակներ, սովետական ժողովուրդների եղբայրական օգնության շնորհիվ, սոցիալիստական պետության ժողովուրդների բարեկամության շնորհիվ պահանջվում են միայն տարիներ։

Իսկական եղբայրական համագործակցու-



թյան ցայտուն օրինակ է հանդիսանում Սովետական Միության բոլոր ժողովուրդների ակտիվ մասնակցությունը հացահատիկի արտադրության ավելացման մի այնպիսի կարևոր աղբյուրի օգտագործման համար մղվող պայքարին, ինչպիսին խամ ու խոպան հողերի յուրացումն է, ինչպես նաև եղբայրական համագործակցության օրինակ է հանդիսանում այն, որ սովետական մարդիկ հայրենասիրաբար արձագանքեցին երկրի Արևելյան և Հյուսիսային շրջանների բնական հարստությունները օգտագործելու վերաբերյալ պարտիայի ու կառավարության կոչին։ Այդ խնդրի լուծման համար ոտքի ելան քաղաքի և գյուղի աշխատավոր լայն մասսաները, զանազան ազգությունների ներկայացուցիչները և, առաջին հերթին, մեր երկրի բոլոր մարզերի, երկրամասերի և ռեսպուբլիկաների կոմերիտականներն ու երիտասարդությունը։

ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամության հսկայական գործուն ուժը իր արտահայտությունն է գտնում Դոնեցկի, Կուզնեցկի և Մոսկվայի ածխային ավազանների ածխահանների, Հայաստանի և Ադրբեջանի մետալուրգների, Ստալինաբադի և Մինսկի կառուցողների, Ռուսաստանի Ֆեդերացիայի և Ուկ-

րախնական Ռեսպուբլիկայի ձեռնարկությունների բանվորների սոցիալիստական մրցության մեջ, Կիևի և Երևանի աշխատավորների, Իվանովոյի և Տաշքենդի, Լենինականի և Կիրովաբադի տեքստիլագործների, արտադրական համագործակցության և Հայաստանի և Վրաստանի երկաթուղայինների սոցիալիստական փոխադարձ օգնության մեջ։

Մեր երկրի ժողովուրդների եղբայրական սերտ համագործակցությունը լայն թափով հանդես է գալիս նաև այն սոցիալիստական մրցության մեջ, որը ծավալվել է բոլոր ռեսպուբլիկաների, մարզերի և երկրամասերի կոլտնտեսային գյուղացիության միջև՝ գյուղատնտեսության շեշտակի վերելքի վերաբերյալ պարտիայի ու կառավարության որոշումները կատարելու և մոտակա տարիներին բնակչության յուրաքանչյուր մեկ շնչին ընկնող մսի, կաթի ու յուղի արտադրությամբ Ամերիկայի Միացյալ Նահանգներին հասնելու համար։

Այդ մրցության հսկայական նշանակությունը կոլտնտեսականների կողմից միմյանց ցույց տրվող օգնությունն է՝ ժողովրդատնտեսական կարևորագույն խնդիրները հաջողությամբ լուծելու համար, և այն, որ այդ



մրցությունը նպաստում է սոցիալիստական ազգերի է՛լ ավելի մերձեցմանը։

Կոմունիզմի կառուցումը մեր երկրում աներևակայելի է առանց սոցիալիստական ազգերի համագործակցության՝ հասարակական կյանքի բոլոր ոլորտներում, այդ թվում և գիտության ոլորտում։

Եղբայրական ռեսպուբլիկաների գիտնականները ձեռք ձեռքի տված աշխատում են տնտեսական և կուլտուրական շինարարության կարևորագույն պրոբլեմների լուծման վրա։ ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիային առընթեր ստեղծված է միութենական ռեսպուբլիկաների գիտությունների ակադեմիաների գիտական գործունեությունը կոորդինացնող խորհուրդ, որը սիստեմատիկորեն հրավիրում է ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի բաժանմունքների ու ինստիտուտների աշխատողների և ռեսպուբլիկական ակադեմիաների աշխատողների համատեղ գիտական սեսիաներ։ Ռեսպուբլիկական ակադեմիաները կարևոր տեղ են գրավում սովետական գիտության զարգացման գործում։ Հայաստանի և Վրաստանի Գիտությունների ակադեմիայի գիտնականները, որոնք մեծ կոլեկտիվ են կազմում, ստանձնել են էներգե-

տիկայի և տեխնիկայի մի շարք պրոբլեմների մշակման խնդիրը։

Սովետական հասարակական կյանքում չկա մի որևէ, շատ թե քիչ էական երևույթ, որի մեջ այս կամ այն ձևով չդրսևորվի ազատ ու իրավահավասար ժողովուրդների համագործակցությունն ու բարեկամությունը։ Այդ բարեկամության և համագործակցության դրսևորումներից մեկն էլ մեր մեծ, բազմազգ Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում անցկացվող ազգային գրականության և արվեստի տասնօրյակներն են, որոնք տրադիցիա են դարձել։

Մեր բազմազգ սովետական պետության մեջ չկա մի ժողովուրդ, որն իր ավանդը չբերի սոցիալիստական կուլտուրայի ընդհանուր, անբաժանելի գանձարանը։ Սովետական ժողովուրդների կուլտուրան խորապես տոգորված է ինտերնացիոնալիզմի ոգով, մյուս ժողովուրդների կուլտուրայի և ազգային տրադիցիաների նկատմամբ տածվող հարգանքի ոգով։ Սովետական ազգային կուլտուրաները փոխադարձաբար լրացնում են միմյանց։ Ռուս գրողների ստեղծագործությունները իրենց մայրենի լեզվով կարդում են մյուս ազգերի աշխատավորները, իսկ այդ ազգերի գրողների ստեղծագործու-



թյունները լայնորեն հայտնի են դառնում ռուս ժողովրդին՝ թարգմանությունների միջոցով։

Սովետական Միության եղբայրական ժողովուրդների գրականությունը և հատկապես ռուս ժողովրդի գրականությունը, լայնորեն հայտնի է և հայ ընթերցողներին, որոնք սիրով են կարդում այն։

Սովետական իշխանության տարիներին Պուշկինի աշխատությունները հրատարակվել են 81 լեզվով, Լև Տոլստոյի աշխատությունները՝ 73 լեզվով, Մաքսիմ Գորկու գրքերը՝ 71 լեզվով, Վ. Մայակովսկու բանաստեղծությունները՝ 50 լեզվով։

ՍՍՌՍ ժողովուրդների անխախտ բարեկամությունն ու համագործակցությունը կածի և է՛լ ավելի կամրապնդվի, որովհետև նրա ոգեշնչողն ու դաստիարակն է Կոմունիստական պարտիան, որի փորձված ղեկավարությամբ սովետական ժողովուրդը համաշխարհային-պատմական հաղթանակներ տարավ և այժմ պատրաստվում է արժանավայել դիմավորելու Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի փառապանծ 40-ամյակը։

---

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՀԶՈՐ ԱՄՐՈՑԸ

Սովետական ժողովուրդը մեծ հանդիսավորությամբ տոնեց Լենինգրադի հիմնադըրման 250-ամյակը։ Մեծ Լենինի պանծալի անունը կրող քաղաքը իրավամբ համարվում է Սովետական պետության հզոր ամրոցը, Մեծ Հոկտեմբերի օրրանը։

Լենինգրադը մեր երկրի աշխատավորների համար, բոլոր ազատասեր ժողովուրդների համար նվիրական է իր պատմական ռևոլյուցիոն տրադիցիաներով։ Լենինգրադումն է ծավալել իր հերոսական ռևոլյուցիոն գործունեությունը Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության հիմնադիր Վլադիմիր Իլյիչ Լենինը։

Պետերբուրգում առաջին անգամ Մեծ Լենինի գլխավորությամբ ռևոլյուցիոն մարտիկները փշրեցին կապիտալիստական ստրկության շղթաները, այստեղ հռչակվեցին և աշխարհով մեկ տարածվեցին սովետական իշխանության առաջին դեկրետները հաշտության և հողի մասին, որոնք ավետեցին



մարդկության զարգացման նոր դարագլխի սկիզբը։ Այստեղից ամբողջ երկրով մեկ իր հաղթական երթն սկսեց սովետական իշխանությունը, ժողովրդի իշխանությունը, աշխատավորների իշխանությունը։ Լենինգրադում ամեն ինչ կապված է անմահ Լենինի անվան հետ, նրա կերպարը ժողովրդի սրտի խորքումն է։

Քաղաքացիական պատերազմի և օտարերկրյա ինտերվենցիայի տարիներին Լենինգրադի բանվորները մեր երկրի ամբողջ աշխատավոր ժողովրդի հետ անվեհեր կերպով ոտքի ելան պաշտպանելու սովետական իշխանությունը, սոցիալիստական պետության անկախությունը, պայքարի ելան սովի և քայքայվածության դեմ, ցույց տվեցին պարտքի կատարման, մեծագույն հերոսության, աշխարհում չտեսնված ռևոլյուցիոն խանդավառության և անձնվիրության օրինակներ։

Մեծ Լենինը նշելով լենինգրադցիների ծառայությունները ռևոլյուցիայի հանդեպ գրել է. «Սովետական ռեսպուբլիկայի երկամյա տարեդարձի օրը առաջին ողջույնին արժանի են Պետրոգրադի բանվորները։ Որպես ռևոլյուցիոն բանվորների և զինվորների ավանգարդ, որպես Ռուսաստանի և ամբողջ աշ-

խարհի աշխատավորների ավանգարդ, Պետրոգրադի բանվորներն առաջինը տապալեցին բուրժուազիայի իշխանությունը և պրոլետարական ռևոլյուցիայի դրոշը բարձրացրին կապիտալիզմի ու իմպերիալիզմի դեմ։

Մեծ են լենինգրադցիների կատարած ծառայությունները մեր երկրի ռազմա-տնտեսական հզորությունն ամրապնդելու գործում։ Լենինգրադի աշխատավորները վիթխարի աշխատանք են կատարել սովետական նոր տեխնիկայի ստեղծման, գիտության զարգացման, սոցիալիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման համար։

Ահա այդ մեծ ծառայությունների համար 1924 թվականին ՍՍՌՄ Սովետների երկրորդ համագումարը որոշեց Պետրոգրադը վերանվանել Լենինգրադ։ «Թող այսուհետև,— ասված է համագումարի որոշման մեջ,— պրոլետարական ռևոլյուցիայի այդ խոշորագույն կենտրոնը առհավետ կապվի պրոլետարիատի առաջնորդներից մեծագույնի՝ Վլադիմիր Իլյիչ Ուլյանովի (Լենին) անվան հետ»։

Քաղաքը վերանվանվելու ժամանակվանից անցել է 33 տարի։ Այդ տարիների ընթացքում մեր երկրում տեղի են ունեցել խոշորագույն իրադարձություններ։

Լենինի քաղաքը պատվով է կրել և այ-



սուհետև էլ շարունակելու է կրել իր փառապանծ անունը։

Սովետական ժողովուրդը երբեք չի մոռանա լենինգրադցիների սխրագործությունը Հայրենական Մեծ պատերազմի տարիներին։ Լենինգրադցիները հերոսաբար պաշտպանեցին Մեծ Հոկտեմբերի նվաճումները և հաղթահարեցին դաժան թշնամու 900-օրյա բլոկադան։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում լենինգրադցիները մեծ և ստեղծագործ աշխատանք կատարեցին։ Կենսագործելով պարտիայի XX համագումարի պատմական որոշումները Լենինգրադի աշխատավորներն անընդհատ կատարելագործում են արտադրությունը բարձրագույն տեխնիկայի բազայի վրա, բարելավում են նրա կազմակերպումը, պայքարում են աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացման համար։ Լենինգրադցիները ակտիվորեն մասնակցեցին ատոմային վիթխարի մեքենայի՝ սինխրոֆազոտրոնի ստեղծմանը։ Լենինգրադում է կառուցվում ատոմային սառցահատը։

Լենինգրադը մեր երկրի արդյունաբերության և կուլտուրայի խոշորագույն կենտրոններից մեկն է։ Նա բնակչության թվով Սովետական Միության երկրորդ քաղաքն է։

Այժմ Լենինգրադում, 1913 թվականի համեմատությամբ, խոշոր արդյունաբերության համախառն արտադրանքը ավելացել է 32 անգամ։ Քաղաքն ունի հարյուր հազարից ավելի գյուտարարներ և ռացիոնալիզատորներ, որոնք միայն անցյալ տարի իրենց առաջարկություններով օգնեցին ձեռնարկություններին տնտեսելու մոտ 500 միլիոն ռուբլի։

Լենինգրադում մեծ աշխատանք է կատարված աշխատավորներին բնակարանով բավարարելու ուղղությամբ։ 1923 թվականից մինչև 1956 թվականը կառուցվել և շահագործման են հանձնվել 12 միլիոն 568 հազար քառակուսի մետր տարածությամբ բնակելի տներ։ 1910 թվականին Պետրոգրադի ամբողջ բնակելի տարածությունը հավասար էր 14 միլիոն 500 հազար քառակուսի մետրի։ Այդ տարիներին փաստորեն կառուցվել է մի նոր Լենինգրադ։ Լենինգրադն ունի 40-ից ավելի բարձրագույն ուսումնական հաստատություն, ուր սովորում են ավելի քան 120 հազար ուսանող։ Տեխնիկումներում և մյուս միջնակարգ մասնագիտական հաստատություններում սովորում են մոտ 80 հազար մարդ։

Լենինգրադը գիտության քաղաք է, ուր կան 182 գիտահետազոտական հիմնարկներ,



որտեղ աշխատում են ավելի քան 16 հազար գիտական աշխատողներ։

Անցյալ տարի քաղաքի հրատարակչությունները լույս ընծայեցին 2.268 անուն գիրք 26 միլիոն օրինակ տիրաժով։ Լենինգրադում կա 46 թանգարան, 13 թատրոն, 63 կինոթատրոն, կուլտուրայի 117 պալատ։

Բարձր զարգացման է հասել Լենինգրադի աշխատավորների բժշկական սպասարկումը։ Անցյալ տարի քաղաքում գործում էին 143 ստացիոնար բժշկական հիմնարկներ, 269 ամբուլատորիա ու պոլիկլինիկա, կանանց ու մանկական 124 կոնսուլտացիա։

Լենինգրադում այս օրերին նոր թափով է ծավալվում Մեծ Հոկտեմբերի 40-ամյակի պատվին կազմակերպված սոցիալիստական մրցությունը։ Լենինգրադցիները պայքարում են առկա արտադրական տարածություններով վեցերորդ հնգամյակում առանց բանվորների թիվն ավելացնելու կրկնապատկել արդյունաբերական արտադրանքի թողարկումը և այս տարվա պլանները կատարել մինչև դեկտեմբերի 20-ը։

---

# ԺԱՄԱՆԱԿԻՆ ԿԱՏԱՐԵՆՔ ԽՈՏՀՈՒՆՁԸ ԵՎ ԿԵՐԵՐԻ ՍԻԼՈՍԱՑՈՒՄԸ

Ա. ԴԱՎԹՅԱՆ
Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրության գլխավոր ագրոնոմ

Մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները ջանք չեն խնայում պատվով կատարելու պարտիայի և կառավարության առաջադրած խնդիրը բնակչության մեկ շնչին ընկնող մսի, կաթի և յուղի արտադրությամբ Ամերիկայի Միացյալ Նահանգներին հասնելու համար։

Անասնաբուծական մթերքների արտադրությունը ավելացնելու նպատակով երկրում ծավալված հայրենասիրական շարժումը լայն արձագանք է գտել նաև մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում։ Բազմաթիվ կոլտնտեսություններ արդեն զգալի չափով ավելացրել են մսի և կաթի արտադրությունը։

Անասնապահական մթերքների արտադրությունը ավելի շատացնելու գործում



վճռական նշանակություն ունի կերը։ Առանց անասուններին կերով լիովին բավարարելու մենք չենք կարող կատարել ստանձնած պարտավորությունները, անասնաբուծության մթերատվությունը բարձրացնելու ուղղությամբ։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում սկսվել և բուռն թափով առաջ են գնում խոտհունձի և կերերի սիլոսացման աշխատանքները։

Ընթացիկ տարում ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները կատարելու են 170—180 հազար հեկտար բնական, շուրջ 70—80 հազար հեկտար ցանովի խոտհարքների հունձ։

Այս լուրջ առաջադրանքը երբ մենք կատարենք ժամանակին և որակով, ինչ խոսք, որ կոլտնտեսություններում կստեղծվեն կերի անհրաժեշտ պաշարներ, ապահովված կլինի անասունների կուշտ ձմեռումը, զգալի չափով կավելանա անասնապահական մթերքների արտադրությունը։

ՄՏԿ-ների և կոլտնտեսությունների կարևոր խնդիրն է՝ խստորեն պահպանել խոտհունձի և կերերի սիլոսացման աշխատանքների օրացուցային գրաֆիկը, հետևել, որ ամեն օր, յուրաքանչյուր աշխատող կատա-

րի խոտհնձի, սիլոս պատրաստելու և ընդհանրապես կեր կուտակելու պլանները։

Խոտհունձը պետք է կատարել հիմնական խոտաբույսերի ծաղկման շրջանում, ամենասեղմ ժամկետներում։ Խոտհնձի հաջողությունը սերտ կերպով պայմանավորված է աշխատող ձեռքերի ճիշտ և արդյունավետ օգտագործելուց։

Խոտհնձի, խոտի չորացման, փոխադրման, ինչպես նաև կերերի սիլոսացման աշխատանքները կազմակերպված և լավագույն ձևով կատարելու նպատակով, անհրաժեշտ է ինչպես կերհայթայթման, նույնպես և դաշտավարական բրիգադաների ներսում աշխատանքի ճիշտ բաշխում կատարել։

Կոլտնտեսությունների, ինչպես բնական, նույնպես և ցանովի ամբողջ խոտհարքները ու բոլոր այն տարածությունները, որտեղից հնարավոր է խոտհունձ կատարել, պետք է ամրացնել բրիգադաներին, իսկ բրիգադաների ներսում՝ օղակներին։ Այդ հնարավորություն կտա կոլտնտեսության ղեկավարությանը խոտհնձի աշխատանքները հաջողությամբ զուգակցել կոլտնտեսությունում տարվող մյուս աշխատանքների հետ։

Անհրաժեշտ է նաև լուրջ ուշադրություն



դարձնել խոտհնձի և սիլոսացման աշխատանքների ընթացքում անհատական գործարքի կիրառման վրա։

Խոտհնձի աշխատանքներին պետք է լայն չափով մասնակից դարձնել անասնապահական ֆերմաների աշխատողներին, որոնք շահագրգռված են ավելի մեծ քանակով կեր կուտակելու համար։

Խոտի բերքահավաքը հաջող անցկացնելու համար հարկավոր է հնձվորներին ապահովել ձեռքի գործիքներով և ինվենտարով, հետևել, որ անխափան աշխատեն հնձող մեքենաները։

Անցյալ տարի խոտհնձի և կերերի սիլոսացման աշխատանքները վատ կազմակերպելու հետևանքով Արթիկի, Աղինի, Թալինի, Կոտայքի շրջանների կոլտնտեսություններում թերակատարվեցին կերերի կուտակման պլանները, որը խանգարեց անասունների նորմալ ձմեռմանը։

Խոտի մեծ պաշարներ կուտակելու նպատակով այս տարի խոտհունձ պետք է կատարել ոչ միայն խոտհարքներում, բարձր խոտակազմ ունեցող արոտներում, այլև դաշտամիջյան միջնակներում, ճանապարհների և առուների եզրերին, անտառներում և անտառային բացատներում, ձորերում ու

բոլոր այն վայրերում, որտեղից հնարավոր է խոտ հավաքել։

Խոտհնձին զուգընթաց անհրաժեշտ է կազմակերպել խոտի չորացման, փոխադրման և անասնապահական ֆերմաների ձմեռման վայրում դիզելու աշխատանքները, թույլ չտալով, որ խզում առաջանա հնձի և փոխադրման միջև։

Կերերի կուտակման գործում մեծ և կարևոր պատասխանատվություն է դրված ռեսպուբլիկայի ՄՏԿ-ների վրա, որոնք հագեցված են խոտհնձի, խոտհավաքի և սիլոսահատման անհրաժեշտ մեքենաներով ու գործիքներով։

Խոտհունձը ավելի շատ մեքենայացնելու նպատակով անհրաժեշտ է յուրաքանչյուր կոլտնտեսությունում առանձնացնել մեքենահարմար ցանովի և բնական խոտհարքների տարածությունները և այն ամրացնել տրակտորային բրիգադաներին։

Այս օրերին հարկավոր է կոլտնտեսականներին հանգամանորեն պարզաբանել խոտհունձ կատարողների համար սահմանված արտոնությունները, որ նրանք պլանից դուրս հնձված և կուտակված խոտի որոշ մասը ստանում են որպես լրացուցիչ վարձատրություն։



Անասունների ձմեռումը հաջող կազմակերպելու գործում մեծ նշանակություն ունի նաև սիլոսը։ Այս տարի մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները, յուրաքանչյուր կովի համար կուտակելու են վեց տոննայից ոչ պակաս սիլոս։

Այժմ սիլոսի պատրաստման համար, որպես հումք պետք է օգտագործել վայրի փարթամ բուսականությունը, իսկ հետագայում ցանովի սիլոսաբույսերը և բանջարա-բոստանային կուլտուրաների մնացորդները։

Այս տարի կոլտնտեսությունները ընդարձակել են եգիպտացորենի ցանքերը։ Անհրաժեշտ է հատուկ խնամքով կազմակերպել այդ արժեքավոր կուլտուրայի, ինչպես նաև կերի արմատապտուղների մշակությունը։

Խոտհնձի և կերերի սիլոսացման աշխատանքների ընթացքում պետք է նոր թափով ծավալել սոցիալիստական մրցությունը, պարբերաբար մասսայականացնել մրցության արդյունքները, տարածել առաջավոր հնձվորների, մեքենավարների փորձը, օգնել ետ մնացողներին առաջավորներին հասնելու, Մեծ Հոկտեմբերի պատվին ստանձնած պարտավորությունները բարձր ցուցանիշներով կատարելու համար։

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՖԻԶԿՈՒԼՏՈՒՐՆԻԿՆԵՐԻ ՏՈՆԸ

Մ. ԹՈՒԹԽԱԼՅԱՆ

*Հուլիսի 18-ին մեր մեծ Հայրենիքի երիտասարդությունը, սովետական ամբողջ ժողովուրդը կնշեն իրենց տրադիցիոն տոներից մեկը՝ Ֆիզկուլտուրնիկների Համամիութենական օրը։ Այդ օրը Սովետական կառավարության կողմից սահմանվել է 1930 թվականին, որպես մեր երկրի բազմամիլիոն ֆիզկուլտուրնիկների և սպորտսմենների տոն, նրանց հաջողությունների ու նվաճումների ստուգատեսի օր։*

*Կոմունիստական պարտիան միշտ էլ մեծ ուշադրություն է դարձրել երիտասարդության ֆիզիկական դաստիարակության վրա, ֆիզկուլտուրան և սպորտը դիտելով որպես մեր մարդկանց առողջության ամրապնդման, նրանց աշխատանքի և Հայրենիքի պաշտպանության համար պատրաստելու, աշխատավորության լայն մասսաների կոմունիստական դաստիարակության կարևոր միջոց։*



*Սովետական պետության հիմնադիր Վ. Ի. Լենինը նշել է, որ «...մեզ պետք են ֆիզիկապես ամուր մարդկանց միլիոնանոց բանակներ. կամքի, արիության, եռանդի ու համառության տեր մարդկանց բանակներ։ Նրանց է պատկանում ապագան, նրանց ձեռքերով պետք է նվաճենք մարդկային հասարակության նոր հիմքերի կառուցման իրավունքը»։*

*Մեծ Լենինի հանճարեղ պատգամների անշեղ կենսագործման, Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության մշտական հոգատարության շնորհիվ ֆիզիկական կուլտուրան և սպորտը մեր երկրում դարձել են բնակչության ամենալայն մասսաների սեփականությունը, մեզանում աճել է ֆիզկուլտուրնիկների և սպորտսմենների հիանալի սերունդ։*

*Մշտապես հոգ տանելով սովետական ժողովրդի բարօրության, նրա հոգևոր և ֆիզիկական ուժերի առավել ծաղկման մասին Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը մեր երկրում մասսայական ֆիզկուլտուրայի զարգացման համար ստեղծել են բոլոր պայմանները։*

*Սովետական պետությունը ամեն տարի հսկայական միջոցներ է հատկացնում ֆի-*

զիկական կուլտուրայի և սպորտի հետագա ծավալման համար։

Մեր երկրում ֆիզկուլտուրնիկներին և սպորտսմեններին տրամադրված են հարյուր հազարավոր բարեկարգ սպորտային բազաներ, ստադիոններ, սպորտային դահլիճներ, ջրավազաններ, սպորտային դաշտեր ու հրապարակներ։ Ներկայումս մեր երկրում կան ֆիզկուլտուրայի 15 ինստիտուտներ, մանկավարժական բուհերի ֆիզդաստիարակության 42 ֆակուլտետներ, որոնք ամեն տարի բաց են թողնում մի քանի հազար դասատուներ։ Բացի դրանից, կադրեր են պատրաստում ֆիզկուլտուրայի 32 տեխնիկումներ և մանկավարժական ուսումնարանների ֆիզդաստիարակության 64 բաժիններ։

Տասնյակ հազարավոր մասնագետներ աշխատում են ֆիզիկական դաստիարակության բնագավառում, նրանցից 50 հազարը ունեն բարձրագույն և միջնակարգ կրթություն։

Այդ բոլորի շնորհիվ տարեցտարի խտանում է մեր ֆիզկուլտուրնիկների ու սպորտսմենների շարքերը, բարձրանում է նրանց վարպետությունը։

Ֆիզկուլտուրան և սպորտը մեծ չափերով ծավալվել են սոցիալիստական գյուղում, որ-



տեղ ստեղծվել են գյուղական սպորտային ընկերություններ։ Այդ մասսայական ֆիզկուլտուրային կազմակերպություններում ներկայումս ընդգրկված են ավելի քան 3 միլիոն կոլտնտեսային սպորտսմեններ։

Միլիոնավոր երիտասարդ բանվորներ, կոլտնտեսականներ, ինտելիգենցիայի ներկայացուցիչներ ու սովորողներ հանձնել են «Պատրաստ աշխատանքի և պաշտպանության» (ՊԱՊ) կոմպլեքսի նորմաները։

Սովետական ֆիզկուլտուրային շարժման, մեր սպորտի պատմության մեջ ամենանշանակալից իրադարձությունը հանդիսացավ ՍՍՌՄ ժողովուրդների Սպարտակիադան, որը տեղի ունեցավ 1956 թվականի օգոստոսին, մեր մեծ Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում։

ՍՍՌՄ ժողովուրդների Սպարտակիադային մասնակցեցին միութենական բոլոր ռեսպուբլիկաների, Մոսկվա և Լենինգրադ քաղաքների մոտ 10 հազար ուժեղագույն ֆիզկուլտուրնիկներ ու սպորտսմեններ։

ՍՍՌՄ ժողովուրդների Սպարտակիադայի բացման օրը՝ օգոստոսի 5-ին սովետական ֆիզկուլտուրնիկները և սպորտսմենները Կոմունիստական պարտիայից և Սովետական կառավարությունից ստացան մի նոր հրաշա-

լի նվեր՝ Մոսկվայի Վ. Ի. Լենինի անվան Կենտրոնական ստադիոնը, որտեղ բոլոր պայմանները ստեղծված են խոշորագույն սպորտային միջոցառումներ անցկացնելու և սպորտսմենների վարպետությունը բարձրացնելու համար։

Ուշագրավ են նաև ՍՍՌՄ ժողովուրդների Սպարտակիադայի սպորտային—տեխնիկական արդյունքները։ Սպարտակիադայում մրցումներ անցկացվեցին սպորտի 22 ձևերից։ Այդ մրցումների ընթացքում միութենական ռեսպուբլիկաների, Մոսկվա և Լենինգրադ քաղաքների լավագույն սպորտսմենների կողմից սահմանվեցին 355 ռեսպուբլիկական, 33 համամիութենական և 9 համաշխարհային նոր ռեկորդներ։

Այժմ ՍՍՌՄ-ում սպորտի վաստակավոր վարպետների և սպորտի վարպետների թիվը հասնում է 9 հազարի։

Հսկայական են սովետական ֆիզկուլտուրային շարժման, սովետական սպորտի հաջողությունները միջազգային ասպարեզում։

Վերջին երկու տարում մեր սպորտսմենները սահմանել են միութենական ռեսպուբլիկաների և սպորտային ընկերությունների հազարավոր ռեկորդներ, բարելավել են 584 համամիութենական, 192 համաշխարհային



ռեկորդներ և նվաճումներ։ Այժմ սովետական սպորտսմենների արդյունքները կազմում են համաշխարհային ռեկորդների աղյուսակի ավելի քան մեկ երրորդը։

Սովետական սպորտի այնպիսի ականավոր ներկայացուցիչների, ինչպիսիք են ՍՍՌՄ սպորտի վաստակավոր վարպետներ Վ. Կուցը, Ա. Վորոբյովը, Վ. Զուկարինը, Լ. Լատինինան, Օ. Գոնչարենկոն, Բ. Շիլկովը, Ի. Կոտկասը, Գ. Շատկովը, Ի. Բոտվիննիկը, Մ. Սմիսլովը և շատ ուրիշներ, հայտնի են ամբողջ աշխարհում։ Աշխարհահռչակ սպորտսմենների թվին են պատկանում նաև մեր ռեսպուբլիկայի ներկայացուցիչներ, սպորտի վաստակավոր վարպետներ Հ. Շահինյանը, Վ. Ենգիբարյանը, Ա. Ազարյանը, Ի. Նովիկովը։ Լայնորեն հայտնի են սպորտի վարպետներ Ս. Ազնաուրյանի, Վ. Հովսեփյանի, Ն. Մուշեղյանի, Վ. Զերնիկովի և ուրիշների անունները։

1952 թվականին Հելսինկիում առաջին անգամ մասնակցելով օլիմպիական խաղերին, որոնց մասնակցում էին 69 երկրների սպորտսմեններ, Սովետական Միության սպորտային պատվիրակությունը հասավ մեծ հաջողության՝ ԱՄՆ-ի հետ կիսելով ընդհանուր առաջին տեղը։

Սովետական սպորտի հատկապես մեծ հաղթանակների տարի հանդիսացավ 1956 թվականը։ Դեռ այդ տարվա սկզբին, հյուսիսային Իտալիայում տեղի ունեցած 16-րդ օլիմպիադայի ձմեռային խաղերում, այսպես կոչված «Սպիտակ օլիմպիադայում», Սովետական Միության սպորտային պատվիրակությունը գրավեց առաջին տեղը։

Այդ հաջողությունը է՛լ ավելի ամրապնդվեց և սովետական սպորտի իսկական տրիումֆի վերածվեց 16-րդ օլիմպիադայի ամառային խաղերում, որոնք տեղի ունեցան Ավստրալիայի Մելբուրն քաղաքում՝ 1956 թվականի նոյեմբեր-դեկտեմբեր ամիսներին։

16-րդ օլիմպիական խաղերում տասնհինգ օր սպորտի 22 ձևերից մրցում էին համաշխարհային սպորտի ամենափայլուն ներկայացուցիչները։ Սովետական սպորտսմենները, որոնք խաղերին մասնակցում էին 325 հոգուց բաղկացած պատվիրակությամբ, հասան խոշորագույն հաղթանակի՝ գրավելով ընդհանուր առաջին տեղը, ինչպես ձեռք բերած միավորների, այնպես էլ շահած մեդալների քանակով։ ՍՍՌՄ սպորտսմենները հետևում թողեցին խաղերին մասնակցող մյուս 66 երկրներին, զգալիորեն առաջ անցնելով նաև ԱՄՆ-ի սպորտսմեններից։



Սովետական սպորտային պատվիրակության փայլուն հաղթանակը մեկ անգամ ևս ապացուցեց սոցիալիստական սիստեմի առավելությունները՝ կապիտալիստականի նկատմամբ և վերջ տվեց «գիտնականների» կողմից համաշխարհային սպորտում ԱՄՆ-ին վերապահված առաջատար դիրքին։

16-րդ օլիմպիական խաղերին հաջողությամբ մասնակցեցին նաև մեր ռեսպուբլիկայի ներկայացուցիչներ, անվանի սպորտսմեններ Վ. Ենգիբարյանը, Ա. Ազարյանը, Ի. Նովիկովը և Վ. Չերնիկովը, ընդ որում առաջին երեքը դարձան օլիմպիական չեմպիոններ և Հայաստան բերեցին չորս ոսկե մեդալ։

Սովետական իշխանության տարիներին ֆիզիկական կուլտուրան և սպորտը բուռն զարգացում են ապրել նաև մեր ռեսպուբլիկայում։ Մեզ մոտ աճել է տաղանդավոր սպորտսմենների հիանալի սերունդ, որը զգալի հաջողությունների է հասել համամիութենական մրցումներում, իսկ Հայաստանի անվանի սպորտսմենները բազմիցս մասնակցելով միջազգային մրցումների, բարձր են պահել սովետական սպորտի պատիվը։

Սովետական Հայաստանի ֆիզկուլտուրայի շարժման և սպորտի պատմության մեջ նշանակալից իրադարձություն հանդիսացավ

Համահայաստանյան սպարտակիադան, որը տեղի ունեցավ 1956 թվականի հունիսին՝ Երևանում։

Համահայաստանյան սպարտակիադայի նախապատրաստության ընթացքում նոր թափով ծավալվեց ֆիզկուլտուրային շարժումը, ֆիզիկական կուլտուրայի և սպորտի մեջ ընդգրկվեցին տասնյակ հազարավոր բանվորներ, կոլտնտեսականներ, ուսանողներ, ինտելիգենցիայի ներկայացուցիչներ։ Բավական է նշել, որ սպարտակիադային նախորդած ժամանակաշրջանում գործարաններում, ֆաբրիկաներում, կոլտնտեսություններում, սովխոզներում և ՄՏ կայաններում, բուհերում ու դպրոցներում տեղի ունեցած մրցումներին, քաղաքային և շրջանային սպարտակիադաներին ու փնջային մրցումներին մասնակցեցին մոտ 120 հազար ֆիզկուլտուրնիկներ և սպորտսմեններ։

Միայն մեկ տարվա ընթացքում մեր ռեսպուբլիկայում ստեղծվեցին մոտ 400 ֆիզկուլտուրային նոր կոլեկտիվներ։

Սովետական Հայաստանի սպորտային պատվիրակությունը հաջողությամբ մասնակցեց ՍՍՌՄ ժողովուրդների Սպարտակիադային և հասավ որոշակի հաջողությունների։ Մեր ռեսպուբլիկայի սպորտսմենները գրա-



վեցին ընդհանուր թիմային 9-րդ տեղը, առաջ անցնելով եղբայրական ութ ռեսպուբլիկաների պատվիրակություններից։ Սովետական Հայաստանի հնգամարտիկների թիմը գրավեց առաջին տեղը իր հետ Երևան բերելով ՍՍՌՄ հնգամարտի բյուրեղապակյա գավաթը։ Հայաստանի սպորտսմեններ՝ բոնցքամարտիկ Վ. Ենգիբարյանը, հնգամարտիկ Ի. Նովիկովը, մարմնամարզիկ Ա. Ազնաուրյանը, թեթև ատլետ Վ. Հովսեփյանը դարձան Սպարտակիադայի հաղթողներ և Սովետական Միության չեմպիոններ։ Ռեսպուբլիկայի սպորտսմենները նվաճեցին 5 ոսկե մեդալ, 9 արծաթե ու բրոնզե ժետոն և մրցանակային տեղեր գրավելու համար ստացան 63 դիպլոմ։

Այժմ Սովետական Հայաստանի սպորտսմենները նախապատրաստվում են այս տարվա հոկտեմբերին Բաքվում կայանալիք Անդրկովկասյան ռեսպուբլիկաների 8-րդ սպարտակիադային։

Մեծ են սովետական ֆիզկուլտուրային շարժման և սպորտի հաջողությունները ու նվաճումները։ Սակայն սովետական մարդկանց հատուկ չէ հանգստանալ ձեռք բերածով։ «Այժմ գլխավորն է չմեծամտանալ,— ասաց ընկ. Ն. Ս. Խրուշչովը Կրեմլում, 16-րդ

օլիմպիական խաղերի մասնակիցների հետ հանդիպման երեկոյին,— առաջիկայում կլինեն է՛լ ավելի լուրջ սպորտային մրցումներ։ Հարկավոր է ամրապնդել և զարգացնել բարոյական և ֆիզիկական ուժերը, հարկավոր է վարպետանալ սպորտի բոլոր ձևերում»։

Մեր երկրում ֆիզիկական կուլտուրայի և սպորտի աշխատանքների ուղղությունը որոշված է ՍՄԿՊ 20-րդ համագումարի դիրեկտիվներով։ Հիմնականը և կարևորը խորապես մասսայական ֆիզկուլտուրային շարժման հետևողական զարգացումն է։ Մեր երկրի ֆիզկուլտուրային և սպորտային կազմակերպությունների խնդիրն է՝ մոտակա ժամանակներում ֆիզիկական կուլտուրայով ու սպորտով զբաղվողների շարքերը ընդգրկել երեք անգամ ավելի շատ թվով բանվորներ, կոլտնտեսականներ, սովորողներ։

Սովետական բազմամիլիոն ֆիզկուլտուրնիկներն ու սպորտսմենները մեր մեծ Հայրենիքի բոլոր աշխատավորների հետ միասին մեծագույն խանդավառությամբ պատրաստվում են նշելու Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձը։

---



# ՄԵԿ ՏՈԿՈՍԸ

Եթե արդյունաբերության մեջ աշխատող յուրաքանչյուր բանվոր բարձրացնի իր աշխատանքի արտադրողականությունը 1 տոկոսով, ապա ՍՍՌՄ արդյունաբերական ձեռնարկություններում աշխատող բանվորների թիվը կավելանա 165 հազար հոգով։



Հանքափորների աշխատանքի արտադրողականության 1 տոկոսի բարձրացումը ամեն տարի ածխի հանույթը կավելացնի 4 միլիոն տոննայով։



Բարձրացնելով իրենց աշխատանքի արտադրողականությունը 1 տոկոսով, նավթագործները դրանով իսկ ամեն տարի նավթի հանույթը կավելացնեն գրեթե 300 հազար տոննայով։



Բեռնատար վագոնների շրջանառության արագացումը 1 տոկոսով նշանակում է յուրաքանչյուր օր 2000 վագոն ավելի բարձել։



Եթե մեր երկրի բամբակագործվածքային ֆաբրիկաների բոլոր բանվորները ավելացնեն աշխատանքի ար-

տադրողականությունը 1 տոկոսով, ապա պլանից դուրս լրացուցիչ կարելի է արտադրել մոտ 15 միլիոն հատ կանաչի հագուստ։



Կոշիկի ֆաբրիկաների միջին կարգի բոլոր բանվորները իրենց աշխատանքի արտադրողականությունը 1 տոկոսով բարձրացնելու դեպքում տարեկան կարող են լրացուցիչ արտադրել 25—30 հազար զույգ կոշիկ։ Կոշիկների այդ քանակով կարելի է ապահովել մի ամբողջ քաղաքի բնակչությունը։



ՍՍՌՄ-ում ծախսվող էլեկտրաէներգիայի 1 տոկոսի խնայողությունը կազմում է 1,9 միլիարդ կիլովատ-ժամ, որը հավասար է Ռուսաստանի բոլոր էլեկտրակայանների կողմից 1913 թվականին թողարկված էլեկտրաէներգիայի քանակին։



Եթե մեր երկրի բոլոր գլանողները իրենց աշխատանքի արտադրողականությունը բարձրացնեն 1 տոկոսով, կստացվի մետաղի այնպիսի քանակություն, որով կարելի է պատրաստել 50 հազար ավտոմեքենա, 70 հազար տրակտոր և 10 հազար մետաղահատ հաստոց։



Վեցերորդ հնգամյակում բնակարանային շինարարության պլանի 1 տոկոսով գերակատարումը հավա-



սար է բնակելի տարածության այնպիսի քանակի, ինչպիսին ունեն Մինսկը կամ Երևանը։



Յուրաքանչյուր կոմբայնի արտադրանքը 1 տկոսով ավելացնելու դեպքում լրացուցիչ կարելի է հավաքել մոտ մեկ միլիոն հեկտար բերք։

---

## СОДЕРЖАНИЕ

Стр.

### МАТЕРИАЛЫ ДЛЯ БЕСЕД





Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ

Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 13
1957

ՎՖ 06922 Պատվեր 536 Տիրաժ 8550

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանց № 8։

Գինը 50 կոպ.։